# ԹԱՐԽԱՆՈՒԹՅԱՆ ՁԵՎԵՐԸ ԵՎ ԱՊԱՀԱՐԿՈՒՄԸ ԱՐԵՎԵԼՅԱՆ ՎՐԱՍՏԱՆՈՒՄ (XVI–XVIII դարեր)

ԳՈՌ ՄԱՐԳԱՐՅԱՆ

*Ուշ միջնադարում Արևելյան Վրաստանում զարգացած ավատատիրական կարգերի անքակտելի բաղադրիչներից էր թարխանություն երևույթը, ինչը հիմնականում հայտնի էր որպես ապահարկություն (հարկային իմունիտետ): Ապահարկություն շնորհվում էր ոչ միայն աշխարհիկ ավատատերերին, այլ նաև վրաց եկեղեցու կալվածքներին:*

*Բառը՝ tarxa:n, հավանական է, թյուրքական ծագում ունի*[1] *և կիրառվել է թյուրքական մեծատոհմիկ ազնվականության տիտղոսաշարում: Հետագայում՝ XI դ. հետո, անցել է մոնղոլերենին darxan կամ darqan ձևով և կրել իմաստային փոփոխություն՝ նշանակելով նաև ապահարկություն*[2]*: Այս եզրի ծագումնաբանությունը և լեզվական պատկանելությունը վիճահարույց է, հնարավոր է համարվել նույնիսկ բառի էտրուսկական ծագումը՝ Տարկուին (Tarkuin) հատուկ անունից*[3]*: Թարխան տերմինի առաջին վկայությունները՝ կոչում իմաստով, հայտնի են խազարական միջավայրից, թվագրվում են V*[4]*–VI*[5] *դդ. և ներկայացված են որպես զինվորական բարձր դասին տրվող տիտղոս: Խազարական հիերարխիկ բուրգում խաքանի, բեյի և ջավշիգարի ստորին սանդղակը զբաղեցնում էին թարխանները: Խազարական խաքանությունում թարխան կարող էին կոչվել ինչպես զորագնդերի հրամանատարները, այնպես էլ խաքանության առանձին շրջանների կառավարիչները*[6]*: Այս մասին վկայություն ենք քաղում 762–764 թթ. Անդրկովկաս արշաված Ասթարխան (Āstarkhān) խազարական զորահրամանատարի հիշատակումից*[7]*: Այս փաստը հաստատում է նաև Ղևոնդը, որը Ասթարխանին անվանում է Ռաժթարխան*[8]*.*

---

[1] R. N. F r y e. Ṭarxŭn-Türxūn and Central Asian History.– “Harvard Journal of Asiatic Studies”, vol. 14, № 1/2 (Jun., 1951), pp. 105–129.

[2] G. C l a u s o n. An Etymological Dictionary of Pre-thirteenth-century Turkish. Oxford, 1972, p. 539.

[3] H. B e v e r i d g e. The Mongol Title Tarkhan.– Journal of the Royal Asiatic Society of Great Britain & Ireland (New Series), vol. 49, Issue 4, October 1917, p. 834.

[4] M. B r o s s e t. Histoire de la Géorgie depuis l’antiquité jusqu’ au XIXE siècle, 1re partie.– St.-Pétersbourg, 1849, p. 156.

[5] C. D’ O h s s o n. Histoire des Mongols, t. 1er, La Haye et Amsterdam, 1834, p. 45.

[6] K. A. B r o o k. The Jews of Khazaria, Lanham, MD, 2009, p. 53.

[7] O. P r i t z a k. The Khazar Kingdom’s Conversion to Judaism.– “Harvard Ukrainian Studies”, vol. 2, № 3. Cambridge, 1978, pp. 261–281.

[8] *Հայտնի է Ասթարխան, Ռասթարխան, Ռաժթարխան ձևերով: Ըստ երևույթին՝ ճիշտ է ռաս-ով սկսվող ձևը, առավել ևս, որ խազարական բանակում կար այդ պաշտոնը* (E. v a n

*«Եւ գումարեալ զօր բազում տայր ի ձեռս զօրավարի միոջ որ անուանել կոչիւր Ռաժթարխան»*[9]*: 737 թ. հայտնի է մեկ այլ վկայություն խազարական իրականությունից՝ հազար թարխան (*Hazār Ṭarkhān – *հազարյակի զորավար) տիտղոսի տեսքով*[10]*: Այն* tarkan *ձևով գոյություն է ունեցել գյոքթյուրքերի տիտղոսաշարում*[11]*: Պետք է ենթադրել, որ Կարախանյանների թյուրքական պետության մեջ ևս գոյություն է ունեցել թարխան տիտղոսը*[12]*: Թյուրքական ժողովուրդների մեջ թարխանը եղել է բավական բարձր, բայց ոչ գերազանցություն, առաջնայնություն շնորհող տիտղոս*[13]*: Վաղ թյուրքական տերություններում թարխան եզրը ենթադրում էր մարդկանց այն շերտը, որ* ցմահ *օժտված էր մի շարք արտոնություններով*[14]*: Մոնղոլները հետագայում փոխառել են այս երևույթը և ինչպես թյուրքական, այնպես մոնղոլական իրականության մեջ թարխանները ներկայացնում էին ռազմական արիստոկրատիան*[15]*: Այդ շրջանի կարևորագույն աղբյուրներից մեկը՝ Ջուվեյնին, հետևյալ կերպ է ներկայացնում թարխան երևույթը և թարխաններին տրվող արտոնությունները՝ 1. նրանք ազատվում էին պարտադիր հարկից (կամ հարկերից), 2. նրանք բաժին ունեին պատերազմական ավարից*[16]*, 3. հանցագործությունների համար պատասխանատվություն չէին կրում, 4. կարող էին ներկայանալ խանին ցանկացած ժամանակ, 5. այս արտոնությունները փոխանցվում էին ժառանգաբար մինչև իններորդ սերունդ*[17]*: Այստեղ տեսնում ենք մի կարևոր փոփոխություն. թարխանության իրավունքը մոնղոլական իրականության մեջ փոխանցվում էր մի քանի սերունդների, այն ժառանգական բնույթ ուներ՝ ի տարբերություն թյուրքական թարխանների, որոնց արտոնությունները տրվում էին ցմահ: Չինգիզյանների տիրապետության սկզբնական շրջանում թարխանը կամ դարխանը կարող էր հանդես գալ երկու իմաստով՝ ա) իրավական փաստաթուղթ, որը ընձեռում էր հարկային իմունիտետ և բ) մարդ, ում տրվում էր հարկային իմունի-*

---

D o n z e l, A. S c h m i d t. Gog and Magog in Early Eastern Christian and Islamic Sources. Leiden, Boston, 2009, p. 190)*:*

[9] *Ղ և ո ն դ. Արշաւանք արաբաց ի Հայս, Փարիզ, 1857, էջ 163:*

[10] P. B. G o l d e n. Turks and Iranians: A Historical Sketch, Turcologica: Turkic-Iranian Contact Areas. Wiesbaden, 2006, pp. 17–39.

[11] C h o i H a n - W o o. A Study of the Ancient Turkic “tarqan”, Handong University.

[12] A. Q a d i r. Waķf; Islamic Law of Charitable Trust. New Delhi, 2004, p. 132.

[13] C h. L e B e a u, H.-P. A m e i l h o n, J. S a i n t - M a r t i n, M. B r o s s e t. Histoire du Bas-Empire, t. XI. Paris, 1830, p. 3.

[14] С. М а к с у д и А р с а л. Тюркская история и право, пер. Р. Мухамметдинов. Казань, 2002, с. 266.

[15] В. В. Б а р т о л ь д. Сочинения I, Туркестан в эпоху монгольского нашествия. М., 1963, с. 451.

[16] *Վ. Բարտոլդը թարխաններին տրված արտոնությունները ներկայացնում է քիչ այլ կերպ՝ պատերազմի ավարի և որսի նկատմամբ ամբողջական սեփականության ձեռքբերում, ինը մահվամբ պատժվող հանցագործությունների պատասխանատվությունից ազատում, բոլոր հարկերից ազատում, ազատ ելումուտ պալատում (տե՛ս նույն տեղում):*

[17] А л а - а д - д и н А т а - М е л и к Д ж у в е й н и. Чингисхан. История завоевателя мира, пер. М. М. Казвини. М., 2004, с. 27.

*տեռը[18]: Ոսկե Հորդայի գերիշխանության տարածքներում թարխան ստացած անձիք ավելի լայն լիազորություններ և արտոնություններ ունեին: Թարխանության հրովարտակը իրենից ենթադրում էր մի քանի պայմաններ՝ կետեր, որոնցում նշվում էր յառլիկի տրման օրինականությունը, թարխան անձանց և նրանց ենթակաների գույքի անձեռնմխելիությունը, առևտրական, ճանապարհային ու տարատեսակ այլ հարկերից, պարտականություններից ազատումը[19]: Թարխան շնորհելու ինստիտուտը դարձել էր ուլթիմուրյանների պաշտպանողական ռազմավարության մի մասը, որով զորավարներից ոմանց թարխանություն (այս դեպքում հարկերից ազատման իրավունք) տալով՝ ապահովում էին իրենց իշխանության ռազմական հենարանը[20]:*

*Ուշ միջնադարյան միջինասիական խանությունների իրականության մեջ, մասնավորապես Կոկանդի խանությունում, թարխանությունն ունեցել է հետևյալ տեսքը. այն անձիք, որոնք միջնադարյան Արևելքում ունեին թարխանության հրովարտակներ, ազատվում էին գանձարան մուծվող բոլոր հարկերից և պարտականություններից, իրենց տերերի հետ չէին կիսում պատերազմների ժամանակ ձեռք բերած ավարը և կատարած հանցագործությունների համար պատասխանատվության չէին ենթարկվում[21]: Ըստ Ջ. Լոութոնի՝ թուրք-մոնղոլական ազդեցության տարածքներում հարկերից և պարտականություններից ազատվելու երևույթը գլխավորապես հայտնի էր թարխանություն տերմինով: Խիվայի խանությունում թարխանությունն իրենից ենթադրում էր ազատում ոչ միայն հարկերից, այլև զինապարտությունից[22]: Բուխարայի խանությունում թարխանությունը ենթադրում էր թարխանի տիրույթների հարկերից ազատում, ազատ ելումուտ սուլթանի իշխանի մոտ և իր հանցանքների պատասխանատվությունից ազատում[23]:*

*Թարխանը հայտնի է նաև որպես հատուկ անուն և որպես այդպիսին հիշատակվում է դեռևս VIII դարից, ինչը հաստատում է 739 թ. Ֆերգանան գրաված թյուրք իշխանազուն Արսլան Թարխանի անունը[24]: Թարխանը հատուկ անվան գործառույթ է ունեցել ոչ միայն մարդկանց, այլև բնակավայրերի համար: Որպես օրինակ կարող է ծառայել Աստրախանի միջնադարյան անվանումը՝ Հաջջ Թարխան (Hnjj Tarkhnn), այս անվանումը հայտնի է մեզ արդեն*

[18] B. Dashdondog. The Mongols and the Armenians (1220–1335). Leiden, 2010, p. 117.

[19] А. Григорьев. Золотоординские ярлыки: поиск и интерпретация.– Тюркологический сборник, М., 2006, с. 74–143.

[20] D. Nicolle, A. McBride. The Age of Tamerlane. Oxford, 1990, p. 24.

[21] В. М. Плоских. Очерки патриархально-феодальных отношений в Южной Киргизии. Илим, 1968, с. 125.

[22] J. Lawton. Samarkand and Bukhara. London, 1991, p. 29.

[23] R. MuKminova. The Shaybanids.– History of Civilizations of Central Asia: Development in Contrast : from the Sixteenth to the Mid-Nineteenth Century. Turin, 2003, pp. 33–45.

[24] A. Saidov, A. Anarbaev, V. Goriyacheva. The Ferghana Valley; the Precolonial Legacy, Ferghana Valley: The Hearth of Central Asia, New York, 2011, pp. 3–29.

*XIV դարից*[25]*: Սրա զուգահեռը, երբ տարածքի անվանման բաղադրիչն է թարխանը, առկա է Վրաստանում՝ Թարխան-Մոուրավովների կալվածքները համապատասխանաբար կոչվում էին Սաթարխոՠ*[26]*:*

*Թարխանություն երևույթի տարածմանն ու կիրառմանը Վրաստանում, հավանաբար, նպաստել էր XI–XIII դդ. այստեղ արդեն հայտնի իմունիտետային պրակտիկան: Այն հանդես է գալիս թավիսուփլեբա (*Tavisufleba*)՝ հարկային իմունիտետ և շեուվալոբա* (Seuvaloba*)՝ արքունի պաշտոնյաների մուտքի արգելումը իմունիտետային տարածքներ, ապահարկություն տերմիններով: Ընդ որում, հիշյալ շրջանում իմունիտետի այս ձևերով օժտված էր նաև եկեղեցին, որն ուներ նաև դատական իմունիտետի իրավունք*[27]*: Համարվում է, որ վրաց եկեղեցին որպես  հարկերից ազատված և դատական իմունիտետով օժտված հայտնի է XI դ.*[28] *սկսած, ինչն իր հերթին կարող էր պայմանավորված լինել վրաց թագավորության վերածնմամբ, վրաց թագավորների կողմից եկեղեցուն օժանդակելու միտումով*[29]*:*

*Եկեղեցուն ու նրա կալվածքները ապահարկելու պրակտիկան գործադրվել է նաև մոնղոլական տիրապետության շրջանում: Քարթլիս ցխովրեբայում պահպանված վկայության համաձայն՝ Մանգու խանի հրամանով Անդրկովկասում Արղունի կատարած աշխարհագրից հետո վրաց և հայոց հոգևորականներն ազատվում են հարկերից. «սակայն հոգևորականության վրա ոչինչ [ոչ մի հարկ] չդրեց, և ոչ էլ այլ դավանանքի պատկանողների վրա և գնաց Հունաստան»*[30]*: Այս տեղեկությունը հաստատում է նաև Կիրակոս Գանձակեցին. □բայց յեկեղեցականս ոչ ինչ առին հարկս, զի չունէին հրաման ՚ի դանէն□*[31]*: Սրանից հետևում է, որ եկեղեցուն ապահարկելու երևույթը կիրառվում էր նաև Հայաստանում, ընդ որում, այստեղ ևս ապահարկություն եկեղեցուն կարող էին տալ նաև տեղական իշխանները: Այդ է հաստատում Շիկաքարի*[32] *ս. Աստվածածին եկեղեցուն 1237 թ. Մարծպան*[33] *իշխանի տված ապահարկութ-*

---

[25] I b n  B a t t ú t a. Travels in Asia and Africa 1325–1354, trans. H. A. R. Gibb. New Delhi, 2005, p. 151.

[26] И. А. Г и л ь д е н ш т е д т. Путешествие по Кавказу в 1770–1773 гг. СПб., 2002, с. 156.

[27] А. Г. М а р г а р я н. Феодальный иммунитет и процесс закрепощения крестьянства в Армении и Грузии в XI–XIII веках.– Кавказ и Византия, вып. 4. Ереван, 1984, с. 5–20.

[28] Л. К о л е с н и к о в. Религиозная обстановка в Грузии. Грузия: проблемы и перспективы развития. М., 2002, с. 317–337.

[29] Н. П о к р о в с к и й. Краткий очерк церковно-исторической жизни Грузии со времени появления в ней христианства и до вступления ее в подданство России. Тифлис, 1905, с. 93–95.

[30] ქართლის ცხოვრება (Картлис цховреба),ტ. IV, თბილისი, 1973, გვ. 215–216:

[31] *Կիրակոսի վարդապետի Գանձակեցւոյ Համառօտ պատմութիւն, Վենետիկ, 1865, էջ 211:*

[32] *Ամրոց Արցախում. տե՛ս* Ш. М к р т ч я н, Б. У л у б а б я н. Историко-археологические памятники Нагорно-Карабаха. Ереван, 1989, с. 10.

[33] *Խոխանաբերդ. Նորահայտ վիմագրեր Խաղբակյանների մասին.– ՀՀ ԳԱԱ □Լրաբեր հասարակական գիտությունների□, 1996,* № *3, էջ 96–105:*

յան իրավունքը. «ու զՇիկայքարայ Աստուածծին ետ իւր հողովն թարխան ա-րարաք»[34]:

Ուշ միջնադարում Արևելյան Վրաստանում թարխան կամ ազատ էր կոչ-վում հարկային պարտականություններից ամբողջությամբ կամ մասամբ ա-զատված գյուղացին: Թարխան ստացած անձիք ազատվում էին այն շնորհած ֆեոդալին հարկեր մուծելուց, բայց շարունակում էին վճարել միայն պետա-կան հարկերը: Ընդ որում, հարկերից ազատված թարխանը հնարավոր է շա-րունակեր իր տիրոջը մուծել հարկերից որևէ մեկը, օրինակ սամասպինձլո (samaspinZlo)[35] հարկը: Թարխանները կարող էին նաև զրկվել իրենց արտո-նություններից և նորից ընկնել նախկին ճորտական կախվածության մեջ[36]:

Վրաց միջավայրում այս երևույթի ակնառու դրսևորումներից է Սաակաձե ազնվական ընտանիքին թարխանություն շնորհելու փաստը: Թարխան կոչու-մը Գեորգի Սաակաձեին շնորհել է Քարթլիի Սիմոն I թագավորը[37], և հետա-գայում այս կոչումը դարձել է տոհմանվան մի մասը, իսկ Սաակաձեի հետ-նորդները կոչվել են Մոուրավիշվիլիներ կամ Թարխնիշվիլիներ: Հավանա-կան է նաև, որ կոչումը տրվել է Գեորգի X թագավորի կողմից, քանի որ կոչու-մը ստանալու պահին Գեորգի Սաակաձեն 22 տարեկան էր (ըստ պատմաբան Պ. Իոսսելիանիի՝ ծնվ. 1582 թ.), իսկ դա, հետևաբար, եղել է 1604 թ.՝ Գեորգի X թագավորի իշխանության տարիներին, երբ Սիմոն I արդեն կենդանի չէր: Ըստ մեկ այլ տեսակետի՝ թարխանություն Սաակաձեներին տրվել է Ռոստոմ թա-գավորի կողմից Գեորգի Սաակաձեի որդուն՝ Իորամին, ով օժանդակել էր Ռոստոմին՝ նրա դեմ բարձրացված ապստամբությունը ճնշելու գործում: Եվ միայն դրանից հետո է Ռոստոմը Իորամին թարխանություն տվել և Սաակա-ձեները Մոուրավիշվիլիի փոխարեն կոչվել են Թարխնիշվիլիներ[38]:

Թարխան տիտղոսի տոհմանվան վերածման երևույթի զուգահեռն առկա է նաև Հնդկաստանում: Մասնավորապես Սինդհում, որտեղ XVI դ. երկրորդ կե-սին Արղունյանների Թարխանյան ճյուղն էր հիմնադրել Մուհամմադ Իսա բե-

[34] Հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, ԺԳ դար, կազմեց Ա. Մաթևոսյան, Երևան, 1984, էջ 905:

[35] Միջնադարում սամասպինձլոն ճորտի կողմից տիրոջը վճարվող բնամթերային հարկատեսակ էր: Այն սխալմամբ համարվել է դրամական հարկ, որը դրամական հարկի է վերածվել XIX դ. 40-ականներին բնամթերային մի շարք հարկերի դրամականի վերածումից հետո: Համադրելի է ունեբուրի ստումարի (უნებური სტუმარი), կոնալղա հարկերի հետ, քանի որ այն ևս գանձվում էր □հյուրասիրության□ տեսքով (M. B r o s s e t. Histoire de la Géorgie depuis l’ antiquité jusqu’ au XIX E siècle, II partie, II livr. St.-Pétersbourg, 1857, p. 508; Э. О р д ж о н и к и д з е. Эволюция аграрных отношений в Грузии. Тбилиси, 1983, с. 71, 80, З. А н ч а б а д з е. Очерки экономической истории Грузии первой половины XIX века. Тбилиси, 1966, с. 24; Ш. М е с х и а. Города и городской строй феодальной Грузии. Тбилиси, 1959, с. 211.

[36] Д. Г в р и т и ш в и л и. Из истории социальных отношений в позднефеодальной Грузии (сатавадо сеньории). Тбилиси, 1961, с. 114–115.

[37] А. Х а х а н о в. Очерки по истории грузинской словесности, вып. 3. М., 1901, с. 200.

[38] Г. О т х м е з у р и. Малые княжества Шида Картли (XV–XVII вв.), дис… док. ист. наук. Тбилиси, 1999, с. 71.

*զը[39]: Այս դինաստիայի տոհմանունը՝ Թարխանյան (tarkhan dinasty), ևս ծագել էր թարխան տիտղոսից:*

*Պ. Իոսսելիանին բերում է թարխանի ուշագրավ մի քանի բացատրություն, ըստ որի թարխանները ա)անձիք են, որոնք ազատված էին հարկերից, բ)որոնք ունեին բնակության վայրն ազատ ընտրելու իրավունք, գ)որոնք ունեին ազատ ելումուտի իրավունք թագավորի մոտ, դ)և անձիք, որոնք օժտված էին դատական իմունիտետով կամ կարող էին դատապարտվել նախօրոք որոշված դատարանով միայն[40]:*

*Վրացերենում փոխառված այս բառի՝ թարխանի տարբերակների առկայությունն իր հերթին վկայում է, որ թարխանությունը Վրաստանում արմատացած և գործող երևույթ էր: Այսպես, tarkhani (*Tarxani*) փոխառված ձևից բացի լեզվում առկա են tarkhneba (*Tarxneba*)՝ թարխանություն, ազատություն տալ, tarkhnoba (*Tarxnoba*)՝ թարխանություն, ազատություն[41], ապահարկություն տերմինները: Ամբողջական ապահարկության դեպքերից է «Քարթլի-Կախեթի-Մեսխեթի կաթողիկոսական կալվածքների թարխանության» 1392 թ. հրովարտակը, որտեղ ասվում է. «... և ինչ ճորտեր և կալվածքներ կան Քարթլիում, Կախեթում կամ Սոմխեթում և այլ տեղերում, նվիրված և նախկինում ունեցած, այժմ այս հրովարտակով նորոգում և թարխանություն ենք տալիս բոլոր արքունի հարկերից»[42]: Վանական կալվածքների ապահարկման նման ձևակերպումներ ունեն մցխեթյան կաթողիկոսական կալվածքների 1447 թ., 1559 թ. և Դավիթ-Գարեջիի վանքի 1696 թ. թարխանության հրովարտակները[43]:*

*Ապահարկությունը տրվում էր նաև անհատների: Որպես օրինակ կարող է ծառայել Քարթլիի Գեորգի XI թագավորի կողմից 1692 թ. և 1697 թ.[44] Փարեմուզ Ջավախիշվիլիին տրված ապահարկության հրովարտակները, որտեղ Ջավախիշվիլիի ճորտերը և կալվածքներն ազատվում են թվարկվող բոլոր հարկերից՝ կոդիս-պուրի, սաբալախե, պիրիսթավի, նախիրիսթավի, լաշքար-նադիրոբա, սաուրի, սամեջինիբո, և ստանում լրիվ թարխանություն[45]:*

*Մցխեթի կաթողիկոսական կալվածքների ամբողջական թարխանության հրովարտակներից բացի, թարխանության գրեր էին տրվում առանձին թեմերի, վանքերի և եկեղեցիների: Ընդ որում, այդ հրովարտակները հաճախ թարմացվում և վերահաստատվում էին: Այսպես, Մանգլիսիի եկեղեցին ամբողջական թարխանություն է ստանում Ալեքսանդր արքայից 1441 թ., 1632 թ. բոլոր հարկերից ազատում է Թեյմուրազ թագավորը, 1678 թ.՝ Գեորգի XI թագավո-*

---

[39] C. E. B o s w o r t h. The New Islamic Dynasties, Edinburgh Univ. Press, 2004, p. 329.

[40] П. И о с с е л и а н и. Жизнь Великаго Моурава Георгия Саакадзе. Тифлис, 1848, с. 5–6.

[41] Д. Ч у б и н а ш в и л и. Грузино-русский словарь. Тбилиси, 1984, с. 554.

[42] ქართული სამართლის ძეგლები, ტ. 3, ტექსტები გამოსცა, შენიშვნები და საძიებლები დაურთო ი. დოლიძე, თბილისი, 1970, გვ. 176–181.

[43] *Նույն տեղում, էջ 187–193, 263–268, 605–608:*

[44] *Վրաստանի ձեռագրերի ազգային կենտրոն (այսուհետև՝ ՎՁԱԿ), ֆ. HD, փաստ. 2521:*

[45] დოკუმენტები (საქართველოს სოციალური ისტორიიდან), რედ. ნ. ბერძენიშვილი, ტ. 2, თბილისი, 1953, გ. 16.

*րը, 1682 թ. Գեորգի XI ազատում է բոլոր հարկերից բացի մեկ հարկից (հայտնի չէ, թե որ հարկից, հավանաբար, ուլուփայից կամ սաուրիից), իսկ 1688 թ.՝ ապահարկում է բացառությամբ զինապարտությունից ազատելու (վանքի ճորտերին) և թաթարական հարկից (ուլուփայից կամ սաուրից, որոնք վավերագրերում հիշատակվում են որպես մոնղոլական հարկեր), 1689 թ. Հերակլ I (Նազար Ալի խան) ազատում է եկեղեցուն բոլոր հարկերից՝ բացի թաթարական սաուրիից, զինվորական և որսորդական պարտականությունից, նույն պայմաններով 1711 թ. եկեղեցուն թարխանություն է տալիս նաև Վախթանգ VI*[46]*: Դավիթ-Գարեջիի վանքին լրիվ թարխանություն է տրվել 1696 թ., իսկ 1698 թ. Հերակլ I վերահաստատել է այս հրովարտակը նույնությամբ: 1770 թ. Հերակլ II ևս ազատում է վանքի կալվածքները բոլոր հարկերից: Ս. Նինոյի վանքից հարկեր չգանձելու հրովարտակ է տվել Կախեթի թագավոր Արչիլ II (Շահ Նազար, 1664–1674 թթ.), որը վերահաստատվել է 1753 թ. Հերակլ II կողմից, իսկ 1758 թ. նույն արքան վանքին լրիվ թարխանություն է շնորհել: Թարխանության հրովարտակներ են տրվել նաև Ծիլկանի և Ուրբնիսիի վանքերին, որոնց կալվածքները ապահարկվել են 1632 թ. Թեյմուրազ, 1648 թ.՝ Ռոստոմ, 1668 թ.՝ Շահնավազ, 1798 թ.՝ Հերակլ II թագավորների կողմից: 1550 թ. թարխանություն են ստացել Քվատախեվիի, 1651 թ.՝ Ալավերդիի, 1716 թ.՝ Սիոնի, 1583 թ.՝ Մցխեթի, 1726 թ.՝ Ռուիսի, 1768 թ.՝ Սամթավիի եկեղեցիներն ու վանքերը*[47]*: Թարխանություն տրվում էր ինչպես վանական կալվածքներին, այնպես էլ վանքերի ու եկեղեցիների սպասավորներին: Զորօրինակ, դա են վկայում Ռոստոմ թագավորի կողմից 1637 թ.*[48] *և XVII դ.*[49] *թվագրվող Էլենե թագուհու կողմից Դիղոմի դեկանոզ Աթանելիին և Աբրամ Պապիձեին տրված թարխանության շնորհագրերը (*siTarxnis wyalobis wigni*): XVIII դ. ապահարկման անուղղակի ցուցումներ են պարունակում նաև Իրանի շահերի ֆերմանները, որտեղ Արևելյան Վրաստանում վանքապատկան կալվածքների օրինական տնօրինող է ճանաչվում վրաց եկեղեցին՝ դրանով նախանշելով այդ կալվածքների անձեռնմխելիությունը*[50]*:*

*Վանական կալվածքների ապահարկման վերոնշյալ դեպքերի քննությունը թույլ է տալիս կատարել հետևյալ եզրակացությունները.*

*ա) Մցխեթի կաթողիկոսական կալվածքներին ամբողջական թարխանություն է տրվել միայն XIV–XVII դդ. ,*

*բ) պարբերաբար վերահաստատվող թարխանության հրովարտակներ տրվում էին առավել խոշոր և կարևոր դեր ունեցող վանքերին,*

---

[46] Акты, собранные Кавказскою археологическою комиссею, т. 1, ред. А. Берже. Тифлис, 1886, с. 6, 23, 30; Д. П у р ц е л а д з е. Грузинские церковные гуджары(грамоты). Тифлис, 1881, с. 7, 8.

[47] *Հրովարտակները տես՝* Акты... *նշվ. աշխ., էջ* 9, 10, 19, 23, 25, 30, 33, 43, Д. П у р ц е л а д з е. *Նշվ. աշխ., էջ* 22, 25, 35, 45, 51.

[48] *ՎՁԱԿ, ֆ. HD, փաստ. 1954:*

[49] *Նույն տեղում, փաստ. 15097:*

[50] Тбилисская коллекция персидских фирманов, т. I. Кутаиси, 1970, с. 127–128, 148, 156.

*գ) թարխանությունը հաճախ բացառություն էր կազմում որոշ հարկերի, մասնավորապես, սաուրիի և զինվորական պարտականության համար: Դա, հավանաբար, պայմանավորված էր նրանով, որ առաջինը կարևորվում էր որպես դրամական հարկ, իսկ երկրորդը՝ արքայական զորագնդերը համալրելու ռեսուրս:*

*Հարկ է նշել, որ Արևելյան Վրաստանում թարխանություն տրվում էր ոչ միայն վրաց եկեղեցուն, այլև հայ քահանաներին: Այսպես, 1594 թ. Քարթլիի Սիմոն թագավորի կողմից Գորիի հայ քահանաներին տրվում է լրիվ թարխանություն և հրամայվում նրանցից այլևս չգանձել վջուհաթ, մալջիհաթ, բահրաչե, բիգար-շիգար, ուլաղ-ուլամ հարկերը և այլ պարտավորություններ*[51]*:*

*Ամփոփենք. տարժամանակյա քննության շրջանակներում թարխան երևույթն իր դրսևորումների մեջ կարելի է ներկայացնել հետևյալ կերպ.*

– *զինվորական կոչում և պաշտոն,*
– *հարկային իմունիտետ,*
– *դատական իմունիտետ,*
– *ազատ և ազատություն,*
– *թարխան ստացած տարածքի անվանում կամ թարխան ստացած անձանց կալվածք,*
– *հատուկ անուն,*
– *և խավ, որը կարող էր ունենալ թվարկված արտոնություններից մի քանիսը միանգամից:*

*Անհրաժեշտ է նշել, որ Արևելյան Վրաստանում թարխանությունը ժամանակավոր բնույթ է ունեցել, ինչը ևս մեկ անգամ հաստատում է թարխանական հրովարտակների վերահաստատման պրակտիկան: Ավելին, թարխանություն կարող էր տրվել նույնիսկ մեկ տարով*[52]*, իսկ ժամկետը լրանալուց հետո այն ստացած անձիք շարունակելու էին կրել նախկին հարկային պարտականությունները: Ընդ որում, վերահաստատման կարիք ունեին ոչ միայն վանքերին, այլև անհատներին տրված հրովարտակները, ինչը, օրինակ, հաստատում են 1631 թ.*[53] *և 1651 թ.*[54] *Բերու Ջանջաշվիլիին Թեյմուրազ և Ռոստոմ թագավորների տված ապահարկության գրերը: Հարկ է ընդգծել, որ թարխանության ժամանակավոր տրման պրակտիկան կիրառվում էր նաև Հայաստանում, ինչի վկայությունն է Կարա-Կոյունլու Իսկանդարի կողմից Ագուլիսին մեկ տարով թարխանություն տալը. «որ (Իսկանդարը) զի յոյժ ողորմած էր ազգիս Հայոց, եւս առաւել մեր գեղիս Ագուլեաց, իւր խաս արար, և մէկ տարի թարխան արար»*[55]:

---

[51] *Հ. Փ ա փ ա զ յ ա ն. Մատենադարանի պարսկերեն վավերագրերը, պր. I, Երևան, 1956, էջ 74–75:*

[52] А. П а н ц х а в а. Очерки аграрной истории феодальной Картли-Кахети конца XVIII века. Тбилиси, 1965, с. 141.

[53] *ՎՁԱԿ, ֆ. HD, փաստ. 14661 ա:*

[54] *Նույն տեղում, փաստ. 14661 բ:*

[55] *Հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, ԺԵ դար, մասն առաջին, կազմեց Լ. Խաչիկյան, Երևան, 1955, էջ 337:*

*Ըստ երևույթին՝ թարխանության շնորհումը այն տվող ֆեոդալին ձեռնտու չէր, քանի որ նա զրկվում էր հարկերի տեսքով իր ստացած եկամուտներից, աշխատող ուժից՝ կոռային աշխատանքներից ապահարկելու դեպքում, զինուժի մի մասից՝ զինապարտության պարտականությունից ազատելու դեպքում և դատական իրավասություններից՝ դատական իմունիտետ տալու դեպքում: Չնայած այս հանգամանքին, երևույթը Վրաստանում լայն տարածում էր ստացել: Թագավորները և խոշոր ավատատերերը իրենց վասալներին թարխանության արտոնությունները տալով՝ դրանով իսկ ստեղծում էին իրենց համար սոցիալական հենարան, եկեղեցու կալվածքներն ապահարկելով էլ՝ ստանում էին հոգևոր իշխանության օժանդակությունը:*

## ВИДЫ ТАРХАНСТВА И ПОДАТНОЙ ИММУНИТЕТ В ВОСТОЧНОЙ ГРУЗИИ (XVI – XVIII века)

ГОР МАРКАРуЯН

Р е з ю м е

В период развитого феодализма в средневекой Грузии существовало явление податного иммунитета, которое после монгольского владычества известно также под термином тарханство. Податным иммунитетом пользовались как светские, так и церковные феодалы. Владения грузинской церкви иммунитетными грамотами царей обретали привилегированный статус. Но тарханство подразумевало не только податной иммунитет. Оно имело в грузинской феодальной среде разностороннее применение, у которого были параллели в других средневековых странах (Армения, Хазарский каганат, монгольские государства, среднеазиатские ханства).

## THE TYPES OF TARKHAN AND THE IMMUNITY OF TAXES IN EASTERN GEORGIA (The 16th – 18th centuries)

GOR MARGARYAN

S u m m a r y

The phenomenon of immunity of taxes existed in the feudal system in medieval Georgia which is also known as tarkhan (tarkhnoba). The immunity was also given to the estates of monasteries. That immunity (tarkhnoba) gave some advantages to the estates belonging to the churches. But tarkhan minded not only the immunity of taxes. It had different applications in the Georgian feudal system, having parallels in other medieval states (Armenia, Khazar kaganate, Mongolian states, Central Asian khanates).